

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԳԱՐՆԱՆ ՇԵՓՈՐԱՀԱՐՆԵՐԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

*Լենինյան կոմերիտմիությանը*

Ել՛ այսօր նորից, քայլի՛ր, ընկե՛ր իմ,
Ել՛ հոգով խնդուն ու խանդավառ,
Երգի՛ր քո սրտի պայծառ երգերը,
Դո՛ւ՝ գարնան ջահել շեփորահար:
Հիշի՛ր լենինյան քո խանձարուրը,
Ճարտար ձեռքերիդ գործերը թանկ,
Դու, որ խլել ես արևի հուրը
Տվել աշխարհին որպես բերկրանք:
Երգիր սուրբ հո՛ղն այս, ամենաթանկը,
Եվ մրրիկնե՛րը հիշիր այն խենթ,
Որոնց դեմ պարզած ջահել քո կյանքը՝
Դարձար անմոռաց ասք ու լեգենդ:
Աշխարհի սրտին քո երգը մոտ է,
Լենինյան խիզա՛խ շեփորահար,
Դու ես մարդկության ջինջ առավոտը
Ե՛վ խնդուն, և՛ խոր, և՛ խանդավառ:



առակոնիսի տները մանյակաձև շարված էին ժամտան բլուրի շուրջը: Տներն իրար կպած էին, և կտուրներով մարդիկ անցուդարձ էին անում:

Տոն օրերին ժամհարը փայտյա կոչնակը խփելով անցնում էր կտուրից-կտուր, և դա մեկն է մանկության ամենաքաղցր հուշերից:

Խառակոնիսցիք որևէ դժբախտություն կանխելու համար սրբերին խոստանում էին ոչ միայն մատաղ, այլև «թալա-հաց», որ թխում էին և կտուրից-կտուր անցնելով՝ նետում երդիկներից վար: Մինչև այսօր էլ իմ քթի մեջ մնացել է թարմ ցորնահացի անուշ բույրը:

Տյառնընդառաջի տոներին բոլորն իրենց խարույկները վառում էին կտուրներին: Երիտասարդներն այդ օրը որոշում էին իրենց սիրո բախտը երեք նշանով: Գիշերը քնելուց առաջ «աղի կլոճ» (բոքոն) էին ուտում, առավոտյան մի պատառ աղի կլոճ դնում էին ամենաբարձր տեղը, մեծ մասամբ աթարի ամբրոցի ծայրին, կտուրին խարույկ էին վառում: Եթե երազում ծարավել ես և քեզ ջուր է տվել այն աղջիկը (կամ տղան), եթե առավոտյան ագռավը քո կլոճի պատառը առել ու թռել է դեպի այն աղջկա (կամ տղայի) տունը և եթե խարույկիդ բոցը քամին տանում է այն աղջկա (կամ տղայի) տան կողմը, ապա այն աղջկան (կամ տղային) աստված նշանակել է քեզ համար:

Մեր տան կտուրով էին անցնում թաղի բոլոր կտուրային ճանապարհները: Մեր տունը հին էր ու խարխուլ: Չնայած գտնվում էր գյուղի գլխավոր ճանապարհի վրա: Կիսագետնափոր էր: Խարխուլ փայտյա դուռը բացվում էր փոքրիկ միջանցքի վրա, որի անկյունում հողի թախտ էր սարքված: Գլխավոր սենյակը (որ կոչվում էր տանտուն) կլորաձև էր, կտուրը հանգչում էր չորս փայտի սյուների վրա, գմբեթաձև կտուրի կենտրոնում երդիկն էր, որ մեր միակ լուսամուտն էր և ծխաթող անցքը: Երդիկի տակ, տան ուղիղ կենտրոնում թոնիրն էր, որի չորս-բոլորը ճառագայթաձև գցում էին տեղաշորերը՝ ձմեռը կրակին ավելի մոտ լինելու համար: Տանտնից մի դուռ բացվում էր ախոռի մեջ, որտեղ կապված էին լինում մեր ծուռ Սալաթ կովը, նրա հերթական հորթը, սկզբում՝ թուխս Բաշոն, հետագայում՝ քրդի սև եզը: Գոմեշ ու ոչխար չունեինք: Տանտնից մի ուրիշ դուռ բացվում էր մառանի վրա, որտեղից ես փոքր հասակում ծիրանի չիր էի գողանում և աչքերս փակում, որ տատիկս չտեսներ:

Մեր տան բակում խոտի փոքրիկ դեզն էր և աթարի ամբրոցը: Մյուս անկյունում թափում էին աղբն ու մոխիրը: Ես անմարելի փափագ ունեի ծառ տնկելու

# ՉՈՐՍ ՏԱՐԵԿԱՆ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

մեր տան բակում: Ես ուզում էի, որ մեր բակը լիներ նման Արշակի բակերին: Դրա համար ես գյուղամերձ պարտեզներից բարդու կամ ուռենու ճյուղեր էի բերում, տնկում էի մեր բակում, օրական չորս-հինգ անգամ ջուր էի տալիս, բայց տնկիներն, ավա՜ղ, չէին կպչում, չորանում էին ու դառնում ցախ: Որովհետև մեր բակում, և առհասարակ Խառակոնիսի բոլոր բակերում, հող չկար: Բասմա էր կամ անհիշելի ժամանակներից իրար վրա շերտ առ շերտ նստած մոխիր: Որովհետև խառակոնիսցիք գոմաղբը չորացնում դարձնում էին աթար՝ թոնիր վառելու համար, իսկ մոխիրը և տան աղբը կուտակում էին բակի մի անկյունում կամ ընդհանուր աղբանոցներում, նայած ում ինչպես էր հարմար:

Բակում ծառ տնկելը մնացել էր ինձ համար այրող և անկատար ցանկություն: Բայց ավելի այրող ցանկություն էր ինձ համար եղբայր ունենալ: Մայրս ինձանից հետո շարունակ աղջիկ էր ունենում: Ես աղոթում էի, որ աստված ինձ եղբայր տա.

— Աստվա՜ծ, ինձ եղբա՜յր տուր... աստվա՜ծ, ինձ եղբա՜յր տուր... աստվա՜ծ, ինձ եղբա՜յր տուր...

Եվ աստվածն ինձ նորից քույր էր տալիս: Ինչո՞ւ... չէ՞ որ ես նախապես տասն անգամ համբուրել էի հոսող ջրի ծայրը: Կար մեկ մոտ այդպիսի հավատալիք: Եթե ուզում ես, որ քեզ համար եղբայր ծնվի, պետք է հոսող ջրի ծայրը համբուրես: Երբ մեր գյուղացիներից մեկը գնում էր գյուղի մոտակա հանդերը ջուր անելու, ես թաքուն հետևում էի նրան, կանգնում էի արտի մեջ և սպասում, որ ջուրը ակոսով ինձ հասնի: Ես կռանում էի և համբուրում պղտոր ջրի ծայրը՝ մտքումս աղաչելով. «աստված, ինձ եղբայր տուր»... հետո վեր էի ցատկում, ջրից վազեվազ ընկնում էի առաջ, պառկում, նորից համբուրում ջրի ծայրը:

Բայց ջուրն ու աստվածը ինձ նորից քույր էին տալիս: Դա ես համարում էի ինձ համար սոսկալի պրկանք: Եղբայր չունենալը: Դա նշանակում էր թիկունք չունենալ:

Ես սան առաջնեկն էի և միակ տղան: Ինձանից հետո չորս քույր էին ծնվել իրար ետևից՝ Հայկանուշը, Սերիկը, Երանուհին և Աղունիկը: Երեքը մեռել էին մեկ-երկու տարեկան չդարձած: Մնացել էր միայն Երանուհին, արտակարգ սիրուն, սաստիկ ընդունակ մի երեխա: Մայրս նրան հագցնում էր Վանում սպիտակ ավելի հետ փոխանակած հին շոր, և իմ քույրը շողշողում էր ինչպես փոքրիկ ծիածան: Հարուստ հարևանուհիները նախանձում էին մորս. ումից ինչ է ծնվել, նախատում էին հաճախ. ոտքերը յորղանի չափ չի քցում, աղջկան հագցնում է ոնց կայմակամի թոռ:

Չնայած եղբայր ունենալու իմ անկատար փափագին, ես քրոջս անչափ սիրում էի: Ես պարծանքով էի նրա ձեռքիցը բռնած ման գալիս մեր թաղի

Նկ. ՀԱԿԱԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



կտուրներին: Ինձ անչափ դուր էր գալիս, երբ հարեվանուհիները իմ քրոջը, թեկուզ և հեգնանքով, անվանում էին կայմակամի թոռ: Երբ Երանուհին արդեն չորս տարեկան էր, իսկ ես՝ ութը, մտնում էինք անկողին, աչքներս փակում և իրար ասում, թե ինչ ենք տեսնում խավարի մեջ: Մենք խավարի մեջ տեսնում էինք ամենաhիրաշալի գունագեղ բաներ. աստղ, աքլոր, գաթա, արորիկ. ձվածեղ, նունուֆար, կակաչ... ինչ ասես:

Երբ Երանուհին մի փոքր էլ մեծացավ, ինձ հետ միասին սովորում էր իմ բոլոր դասերը և իմ բոլոր իմացածները անգիր գիտեր: Նա խոստանում էր դառնալ ուսումնական սիրուն հայուհի:

Մորս հերանք աղքատացել էին, իրար ետևից մեռել: Մնացել էին միայն Անթառամ տատիկս, որ բոլորովին թառամել էր, կուրացել, և ավագ մորաքույրս՝ Մարիամը, որ կաղում էր երկու ոտքից: Նա էր պահում կույր տատիկիս: Ինչպե՞ս էր պահում, ի՞նչ եկամուտով, ես այն ժամանակ չգիտեի: Հիմա էլ չգիտեմ: Մենք նրանց օգնել անկարող էինք, մենք հազիվ էինք ծայրը ծայրին հասցնում: Իսկ հաճախ չէինք էլ հասցնում: Միջնակ մորաքույրս՝ Ոսկոն, ամուսնացել էր մի ժլատ և դաժան մարդու հետ, որի անունը Սողո էր: Նա թույլ չէր տալիս, որ բարեսիրտ մորաքույր Ոսկոն մի կտոր իսկ հաց տա իր թշվառ ազգականներին: Հապա ինչպե՞ս էին ապրում Անթառամ տատիկս և մորաքույր Մարիամը:

Նրանք ապրում էին ժամսան բլուրի մյուս կողմը, խարխուլ ու նեղ մի խրճիթում: Ես երբեմն գնում էի նրանց այցելության: Տատս խարխափելով ինձ բռնում էր, թշերս համբուրում, իսկ մորաքույր Մարիամը տալիս էր ինձ որևէ ուտելու բան, մի հատ արտամետի խնձոր, լավաշի մեջ փաթաթած մի կտոր պանիր կամ նույնիսկ փոխինձ:

Որտեղի՞ց էր ճարում, ինչպե՞ս էին ապրում նրանք և ինչպե՞ս մեռան: Ես չեմ հիշում: Ես հիմա, այս տողերը գրելիս, նոր եմ զգում նրանց ահավոր թշվառության վիշտը:

Ես հիմա նորից եմ ապրում վաթսունհինգ տարի առաջ անցած իմ չորս տարեկան մանկությունը, որ լի էր ցավերով, զրկանքներով ու երազանքով:

Իսկ իմ հորական տատիկը, փոքրամարմին ու հարյուր անգամ կարկատած փիրունով «Աֆրոդիտեն» կամ պարզապես Խարապտի խարս Տիտեն, շարունակում էր Խառակոնիսի հիվանդներին բուժել բոլորովին ձրի և գլխավորել մեր ընտանիքի չքավորությունը:

Չքավոր էր իմ տատիկը, բայց անչափ կենսուրախ, մարդամոտ ու զրուցասեր: Ամեն երեկո նա գնում էր որևէ հարևանի տուն սանջու կտրելու, ցաված աչքեր դեղելու կամ կոտրված ոտք բուժելու, տարվում էր զրույցով և տուն էր վերադառնում ուշ գիշերին:

Ես հիշում եմ այդ երեկոներից մեկը: Հայրս քաղաք էր գնացել, հորաքույր Ալմաստը՝ Արշակ, տատիկըս՝ հարևանի տուն: Քույրերս քնած էին: Տանը միայնակ նստած էինք ես ու մայրս: Չեթի ճրագը խրճիթում տարածում էր դեղին կիսախավար: Ես հիվանդությունից դեռ չէի վեր կացել ու զառանցում էի: Իմ աչքի առաջ դեղին կիսախավարի մեջ գոյանում էին զանազան երևույթներ և իմ սիրտը լցնում սարսափով: Գոյանում էր մի կարմիր աքլոր և ինձ էր հառում իր կրակ աչքերը, հետո աքլորը դառնում էր սև կատու և սպիտակ ժանիքները բաց անելով՝ ծիծաղում ինձ վրա, հետո կատուն դառնում էր մի պնակ թթու դրած պոմիդոր և զարմանում էր, որ ես իրեն չեմ ուտում: Այդպես անվերջ:

Ես այն ժամանակ հավատում էի չարքերի գոյությանը, կարծում էի, թե շրջապատված եմ չարքերով և սարսափած խոսում էի մորս հետ.

— Մա՛, աքլորը կտուցը մտցնում է իմ աչքերին, ուզում է աչքերս հանել:

— Աքլոր չկա, ձագի՛կս,— իր վախը քողարկել չէր կարողանում մայրս,— ...Աքլոր չկա: Քամին է խաղում ճրագի հետ:

— Մա՛,— ես շարունակում էի սարսափահար զառանցել,— կարմիր աքլորը դարձավ սև կատու: Մեջքն՛ ուռեցրել է, որ ինձ վրա թռնի: Կարծում է ես մուկ եմ:

— Կատու չկա, Հայե՛ր ջան,— հանգստացնում էր ինձ մայրս,— սև կատու չկա: Դա սյան սև շուքն է ընկել թոնրին:

— Մա՛,— ես չէի հանգստանում,— արորիկն ուտում է մեր լոլիկները: Ասա՝ թող չուտի: Ես պիտի ուտեմ:

— Լոլիկ չկա, բալա՛ ջան, արորիկ չկա: Դա ճրագի լույսն է դիպել կարպետին:

Մայրս ինձ կրծքին էր սեղմում ու համոզում, որ հանգստանամ: Բայց ես զգում էի նրա սրտի տագնապահար տրոփյունը և ավելի շատ էի վախենում:

— Ճըռռռ՛,— դուռը բացվեց և ներս մտավ տատիկս:— Յա՞, քա ինչի՞ չեք պառկել:

— Ինչ պառկենք,— տրտնջաց մայրս,—գնացել ես խալխի տները չանա ես բանացնում, տղես էստեղ լեղաճաք եղավ:

— Քա ինչի՞,— տատս հորանջելով բերանը խաչակնքեց:

— Ես ինչ գիտեմ: Աչքին բաներ են երևում:

— Ի՞նչ բաներ:

Ես թվեցի այն բոլորը, ինչ երևացել էր իմ աչքին:

— Էդ բոլորը աչքիդ է երևացել, արևո՛ւդ մեռնեմ,— բերանը նորից խաչակնքեց իմ տատը:—Մի՛ վախենա: Մերդ կողքիդ՝ ինչ էիր վախենում:

— Մերս էլ էր վախենում,— տրտնջացի ես:

— Քա, տղեդ կողքիդ՝ ի՞նչ ես վախենում,— զարմացավ տատիկս:

## ԱՄԱՌ

*ԹԱԹՈՒԼ ԲՈՂՈՐՋՅԱՆ*

Ծանրացել են ծառերն էլի
Ու ճոճվում են բերքով հասուն,
Արեգակը սար ու դաշտին
Թափում է իր հուրը կիզուն:

Ոսկի հասկերն օրորվելով,
Թմբից-թումբ են կարծես գնում,
Կարծես քամին թեթև շնչով,
Շիկնած մի ծով է ծածանում:

## ԱԶԱՏ ԳԵՏ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

Ակունքդ դարերի մեջ է,
Ազա՛տ գետ, հարազա՛տ իմ գետ,
Քարքարոտ սարերի մեջ է,
Ազա՛տ գետ, հարազա՛տ իմ գետ:
Գալիս ես երակ առ երակ,
Հողերը սնում անջրդի,
Ես քո երգերում սառնորակ
Տրոփն եմ լսում իմ սրտի:
Այդ ո՞ւր ես վազում, չես ասում,
Ազա՛տ գետ, հարազա՛տ իմ գետ,
Դեպի մայր Արաքսն ես դու վազում,
Ազա՛տ գետ, հարազա՛տ իմ գետ:
Դե գնա՛, ջրերով հորդուն,
Դե գնա՛, քո երթն է բարի,
Քեզ հետ իմ կարո՛տն էլ տար դու,
Թող հայոց գետը վարարի:

## ՄԻ ՄԱՐԴ ՉԿԱՐ, ՈՐ...

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*

Օրը կիրակի է: Դասերը պատրաստելուց առաջ դուրս ենք եկել մի քիչ թարմանալու: Առանց դրա չի կարելի: Հոգնած ուղեղով կսովորես, կսովորես, բայց, մեկ է, գլուխդ բան չի մտնի:

— Նայի՛ր, նայի՛ր...,— ասաց Գագիկը,— ա՛յ թե տղամարդ եմ ասել, հա՛... Աղջկան թողեց փողոցի մեջտեղում, ինքը թռավ մայթ: Ու դեռ ակնոց էլ ունի... Մորթապա՛շտ:

Աղջիկը հազիվհազ դուրս պրծավ երկնագույն «Վոլգայի» քթի առջևից և, վախից ճեփ-ճերմակ կտրած, բարձրացավ մայթ ու քայլեց փողոցն ի վեր, առանց ուշադրություն դարձնելու ակնոցավորի վրա: Երիտասարդը շփոթված մնաց տեղում, ապա մարդկանց արանքով խուսանավելով, հասավ նրան և փորձում էր ինչ-որ բան բացատրել, Աղջիկը չէր լսում: Երիտասարդը շարունակում էր ձեռին-ոտին անել, անցնելով մերթ նրա աջ կողմը, մերթ ձախ կողմը:

— Թո՛ւյլ արարած,— նրա հասցեին փնթփնթաց Գագիկը, հայացքը վերջապես կտրելով նրանցից: Մի րոպե ծամելը դադարեցնելով, նա ատամների արանքից «խոցեց» կողքի հեռագրասյունը:

Որտեղից էլ գտնում է այդ ծամոնը... Ծամում է ու «կրակում», ծամում է ու «կրակում»:

— Տուն չգնա՞նք,— հարցնում եմ:

— Կգնանք...

Ավտոմեքենաներն ընթանում են անընդհատ հոսանքով, երկու-երեք րոպեն մեկ նեղ մի միջանցք թողնելով, որպեսզի հետիոտները մայթից-մայթ անցնեն:

Նայելու բան է, թե մարդիկ ոնց են օգտվում այդ կարճատև դադարից: Երկու կողմից խուժում են իրար ընդառաջ և, ընդհարվելով մեկմեկու, մի աչքը վերև, մի աչքը ներքև թեքած, սլանում են դեպի հակառակ մայթերը:

— Մի տե՛ս, մի տե՛ս այն տատիկին: Ոչ մի կերպ չի կարողանում մեր կողմն անցնել: Լիքը ցանցապարկն էլ ձեռքին...

— Երևի շուկայից է գալիս:

— Ասա՝ այ պառավ, ո՞ւր ես տնից դուրս գալիս...

— Մեկնումեկը երևի կօգնի:

— Ինչքան ժամանակ է՝ աչքս նրանից չեմ կտրում: Երկու քայլ առաջ է գալիս ու նորից ետ-ետ գնում: Այսքան բազմության մեջ մի մարդ չկա, որ ձեռքից բռնի, անցկացնի այս կողմը: Մեքենաներն էլ ասես խոսքը մեկ են արել... Ո՞ւր, ա՛յ տատիկ,— հանկարծ կոկորդով մեկ բղավեց Գագիկը,— գլխիդ ձե՞ռ ես քաշել...

Մեքենաների աղմուկի և մարդկային ժխորի միջից հազիվ թե նրա ձայնը կնոջը հասներ, բայց և այնպես կինը շփոթված ետ-ետ գնաց, հուսահատորեն շուրջը նայելով: Փողոցի ամբողջ լայնքով իրար կպած, իրար հրհրելով, ընթանում էր գույնզգույն մեքենաների անվերջանալի նախիրը, ասես քշված անտես մի տավարածի կատաղի մտրակից:

— Մեկնումեկը տեսնես կօգնի՞: Չէ՛... Սրանց եմ տեսնո՛ւմ, խեղճ պառավն այսօր տուն չի հասնի:

Ասում ենք ու, մենք էլ մեր ճանապարհը շարունակում:

...Արդեն տանն ենք: Նստած պատշգամբում, վաղվա դասերն ենք պատրաստում:

Հանկարծ հիշում եմ պառավին ու հիշեցնում Գագիկին, և նորից ու նորից զարմանում ենք.

— Մի մարդ չկար, որ...



# ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Խմբագրության մի քանի աշխատակիցներով անվանի գրողին այցելեցինք Լուսակերտի նրա ամառանոցում: Այստեղ նա ապրում և աշխատում է ամռան ամիսներին: Մենք եկել էինք մեկ-երկու ժամով, բայց մնացինք մինչև ուշ երեկո: Գեղեցիկ էր տունը շրջապատող այգին, որը իր ձեռքով տնկել ու խնամում է Վախթանգ Անանյանը, երևանյան շոգից հետո հաճելի էր նստել ղով այգում, բայց ամենահաճելին մեր բոլորիս սիրելի գրողի ներկայությունն էր, նրա համով խոսք ու զրույցը:

Մենք հափշտակված լսում էինք նրան, մտքով նրա հետ թռչում դեպի 1920 թվականը... Նոյեմբեր... 11-րդ կարմիր բանակը մուտքը Հայաստան... պատանի Վախթանգ Անանյանն ու նրա ընկերները կոմսոմոլի

բջիջ են ստեղծում Դիլիջանի Շամախյան գյուղում:

Այնուհետև նա մեկ կախարդի պես տարավ Հայաստանի լեռնային կածաններով ու անտառներով, և մասնակից արավ իր ապրածին ու տեսածին: Լսելով նրան, մենք մի ավելորդ անգամ ևս համոզվեցինք, որ նրա հրաշալի գրքերը արդյունք են այն մեծ ու անկեղծ սիրո, որ նա տածում է իր երկրի ու հայրենի բնության նկատմամբ:



Հայրենի բնաշխարհը եղել ու մնում է Վախթանգ Անանյանի կյանքի, նրա էության անբաժանելի մասը: Կարելի է հիանալ բնության գեղեցկություններով, օգտվել նրա բարիքներից, բայց չհասկանալ նրան: Վախթանգ Անանյանը բնությունը հասկանում ու զգում է այնպես, ինչպես կարելի է հասկանալ ու զգալ մերձավորին, նրա հոգսերը, կարիքները: Բնությունը նրա համար ոչ միայն հիացմունքի առարկա է, այլև մտահոգության մի աշխարհ, որտեղ յուրաքանչյուր կենդանի արարած հոգատար վերաբերմունքի և պաշտպանության կարիք ունի:

Հայրենի բնաշխարհի ահա այս խոր իմացությունն ու զգացողությունն էլ Վախթանգ Անանյանին փոխադարձաբար տվել են այն ներշնչանքը, երևակայության այն թռիչքները, որոնց շնորհիվ գրվել են նրա «Սևանի ափին», «Հովազաձորի գերիները» հրաշալի վեպերը և բազմաթիվ պատմվածքները, որոնք դարձել են ոչ միայն հայ, այլև սովետական ու արտասահմանյան միլիոնավոր մանուկ ու մեծահասակ ընթերցողների սեփականությունը, թարգմանվել են տասնյակ լեզուներով:



Վաղուց արդեն մթնել էր, երբ մենք հրաժեշտ տվեցինք Վախթանգ Անանյանին: Մեր այդ հանդիպումից մնացին այս լուսանկարները և անջնջելի տպավորություններ: Եվ ահա մենք նրան կրկին հանդիպում ենք այժմ՝ մեր ամսագրի էջերում: Առիթից օգտվելով, մեր ընթերցողների և խմբագրության անունից ջերմորեն շնորհավորենք սիրելի գրողին կառավարական բարձր պարգևի՝ Հայաստանի պետական մրցանակի առթիվ, որ նա ստացավ մի քանի ամիս առաջ, մանկական գրականության ասպարեզում ունեցած իր մեծ վաստակի համար:

Միաժամանակ սիրելի գրողին մաղթենք քաջառողջություն, երկար տարիների կյանք և ստեղծագործական նորանոր հաջողություններ:

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՈՐՍՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԱՐԾԻՎՆԵՐՈՎ

Հայոց թագավորները և իշխանները սովորություն ունեին արծիվներով որսի գնալու: Արծրունյաց նախարարները որսի ժամանակ ընթանում էին թագավորների առաջից և արծիվներ էին կրում իրենց դաստակներին: Իրենց այդ պաշտոնի համար էր, որ, ըստ Մովսես Խորենացու, մի ամբողջ նախարարական տոհմ Արծրունի էր կոչվում («Եվ Արծրունիներին իմ իմացածով ոչ թե Արծրունի են, այլ՝ «Արծիվ ունի», որոնք արծիվներ էին տանում թագավորի առաջ»: Մ. Խորենացի)։

Թովմա Արծրունի հայ մատենագիրը իր «Պատմություն տանն Արծրունյաց» գրքում պատմում է, թե ինչպես մեր թվականությունից վեց դար առաջ թագավորող Տիգրան արքան Աժդահակի որդիներից երկուսին ձերբակալեց և տարավ Հայաստան: Նրանք ջանասեր հպատակներ դարձան և արժանացան թագավորի ուշադրությանը: Թագավորը նրանց տվեց իր առաջից արծիվ և բազե տանելու պատվավոր պաշտոնը, նաև նվիրեց Աղբակ գավառը, իսկ հետո՝ Վրնջունի, Հախրամ և այլ գավառներ, հետո նախարարական կոչում տվեց, որովհետև թագավորին արծիվներով որսի առաջնորդողները պետք է նախարարական տոհմից լինեին։

Արշակունի թագավորն իր շքախմբով Վաղարշապատից դուրս էր եկել Արարատյան դաշտը: Նրան հետևում էին՝ հայոց զորքերի սպարապետ Ամատունի իշխանը և ուրիշ հայ իշխաններ, իշխանազունք, ազատանին, պալատական խանդավառ ու որսասեր երիտասարդներ՝ բոլորն էլ հեծած փառաբանված հայկական նժույգներ:

Մեծամորը նոր էին անցել, երբ տափաստանում, հեռո՜ւ, Արմավիրի բլրի ուղղությամբ, հորիզոնում երևաց վիթերի (ջեյրանների) հոտը։ Թափորը մարտական կարգ ընդունեց, որսապետը, որը նույնպես նախարար էր, մարդկանց բաժանեց խմբերի: Ապա հանեցին արծիվների աչքերը ծածկող գլխանոցները և արծվակիր ձախ բազուկներն առաջ մեկնած՝ խըթանեցին ձիերին:

Մինչև վիթերին հասնելը, տափաստանի ցանցառ մացառների մեջ մրափող մի գայլ դուրս պըրծավ ու առաջ սլացավ, որքան որ ուժ ուներ ոտքերի մեջ։ Բայց հո հայկական նժույգից արագ չէ՞ր վազելու: Իսկ արծիվնե՞րը... Պոկ են գալիս իշխանական բազուկներից, թափահարում իրենց լայն թևերը, սկզբում դանդաղ, ապա հետզհետե թափ առնելով ցած են սուրում հողմի նման շառաչելով և հաջորդ րոպեին լեղապատառ գազանն արդեն ահարկու գիշատչի ճանկերի մեջ է:



Արծիվն ինքը խոշոր թռչուն չէ, նրա քաշը հազիվ 3-4 կիլոգրամ է: Իսկ գայլը, որին հետապնդում է, տասնապատիկ խոշոր է իրենից: Չնայած այդ հսկայական տարբերությանը, արծիվը ցած մեկնած իր հզոր ճիրանները խրում է գազանի մեջքը, թռիչքի հզոր թափով գետնից կտրում է գայլին, մի փոքր վեր բարձրացնում ու ցած նետում: Ու հետո այլևս չի թողնում, որ ուշքի գա, վրա է հասնում, մի թաթը խրում է նրա վիզը, մյուսով աչքերն է ծվատում ու իր հզոր կտուցով ըսկըսում է հարվածել գազանի գլխին, աչքի խոռոչներին ու հետն էլ շուտ-շուտ նայում է մոտեցող ձիավորներին, կարծես ասում է. «Շուտ հասեք է՛, ի՞նչ բանի եք...»

Մինչև գազանն ուշքի կգա և կկսի դիմադրել իրենից շատ թույլ ախոյանին, քափ քրտինքի մեջ կորած իր նժույգով տեղ է հասնում արծվի տերը...

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

# ՀԱՐՍՏԱՑՆԵՆՔ ՀԱՅՐԵՆԻ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ



Վերջին տասնամյակների ընթացքում խիստ պակասել է վայրի խոզերի քանակը մեր բնության մեջ: Այժմ մեր երկրում արգելված է վարազի որսը: Բացի դրանից, կառավարությունը 60 վայրի խոզ է ներմուծել Հայաստան և բաց թողել Ծաղկաձորի ու Դիլիջանի անտառներում:

Նրանք ձմեռը բավական հաջող անցկացրին, գարնանը ձագեր բերին անտառի թավուտում և աստիճանաբար հարմարվում են իրենց նոր միջավայրին:

Որսորդներն էլ իրենց հերթին են վարազներ տարածում անտառներում: Նրանց կամավոր ընկերությունը Կովկասյան որսարգելանոցից բերել է 80 խոզ և բաց թողել Արայի լեռան փեշերին, Լոռու Արտաժան կոչված անտառում և Եղեգնաձորի շրջանում:



# ԶՐՈՒՅՑ ԶՐՈՒՅՑԻ ՄԱՍԻՆ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

## 3. ԻՆՉԻ՞ ՄԱՍԻՆ ԶՐՈՒՑԵԼ

Եվ Կասսիլը մի հիանալի ֆելիետոն ունի «Հոգեհան» վերնագրով, այն մարդու մասին, որն օժտված էր մի նենգ հատկությամբ՝ բոլոր հնարավոր թեմաներից կրույցի համար ընտրել հենց այն, որ ամենից քիչ կարող է հաճելի լինել կրուցակցին: «...Նա կարմանալիորեն տեղյակ է այն ամենին, ինչ կարող է թունավորել մարդկանց տրամադրությունը: Նա առաջինն է իմանում ձեր ընկերոջ մահը, ձեր ծանոթների հետ կատարված անախորժությունների, ձեր հիմնարկի առաջիկա կրճատումների մասին: Նա աճապարում է դրանց մասին հայտնել ձեվ չափազանց բազմանշանակ և ծայրահեղ ցավակցող տոնով: Մարդկանց տհաճ բաներ ասել, առաջինը վատ լուր

*Սկիզբը՝ «Պիոներ» №№ 6, 7, 1971 թ.:*

հաղորդել, փչացնել տրամադրությունը՝ սա է նրա կոչումը. նա համոզված է, որ դա իր անմիջական պարտականությունն է, նույնիսկ պարտքը... Նա հաճախ այցելում է ձեզ մի ժամով, բայց նըստում է հինգ ժամ: Այդ ժամանակամիջոցում, օգտվելով հինավուրց ծանոթությունից և բարեկամական կապերից, հասցնում է տան տերերին հայտնել մի ամբողջ կույտ անախորժություններ: Նա դեռ նոր է մտել նախասենյակ, չի էլ հասցրել կրկնակոշիկները հանել, երբ տանտերը լսում է.

— Սիրելիդ իմ... այս ի՞նչ եք դարձել: Հիվանդացե՞լ եք, ի՞նչ է: Ոնց որ դիակ լինեք: Ձեր երեսին գույն չկա...

Տանտերը, որ նոր է վերադարձել Սոչիից, արևախանձ, յոթ կիլո ավելացած, փորձում է առարկել, թե՝ ընդհակառակը, ինքն առույգ է ու առողջ, թե նոր է վերադարձել առողջարանից...

— Ի՜հի,—ասում է «բարյացակամ» հյուրը,— Սոչի՜, ա՜յ թե տեղ եք գտել: Մի՞թե կարելի է ձեր սրտով արևադարձային գոտում հանգստանալ: Պարզ է, փչացրել եք ձեր սիրտը: Է՜, ջահելությո՜ւն, ջահելությո՜ւն, չեք խնայում ձեր առողջությունը: Մի նայե՜ք, թե ինչի՜ եք նման:

Տանտիրուհուն ողջունելիս նա բացականչում է.

— Բարև՜ ձեզ, հարգանքնե՜րս: Եկա տեսնեմ ոնց եք, ոնց չեք... Լավ չեք նայում, լավ չեք նայում ձեր կողակցին... Դուք էլ մի տեսակ էն չեք... Վա՜յ, վա՜յ ծերացել եք, ծերացել... Դուք ծերուկիս ներեցեք խնդրեմ, գիտեք, ես սովոր եմ ճշմարտությունը երեսին ասել... Երևի շատ-շատ երեսունհինգ լինեք, ավել չէ... ի՞նչ, քսանչո՞րս: Մի տես է՜, կյանքը ո՜նց է իրենն անում... թե՞ սանրվածքը չի սազում... Է՜հ, իզո՜ւր եք մազերդ կտրել: Այնպես ավելի լավ էր:

Տանտերն իզուր է փորձում վերջ դնել այդ հոգեմաշ խոսակցությանը: Իզուր է թեյով, թխվածքով հյուրասիրում: Իզո՜ւր: Հյուրն անդրդվելի է:

— Ի միջի այլոց,— մտահոգ հայտնում է նա,— ես մի քանի տեղ եղա, մի քանիսի հետ խոսեցի... Ճիշտն ասեմ, վատ են խոսում ձեր մասին... Էնպես բան են ասում, որ հավատալս չի գալիս...

— Ի՞նչ են ասում,— վախենում է տանտերը:

— Չէ՜, չէ՜, ի՜նչ եք ասում, չեմ ասի, ես խոսք տանող-բերո՞ղ եմ, ի՜նչ է... Ուղղակի իմ ընկերական պարտքն եմ համարում նախազգուշացնել, որ տեղյակ լինեք: Շատերն են վատ խոսում ձեր մասին: Իբրև թե դուք քծնող, տգետ, ճոռոմախոս ու մորթապաշտ մարդ եք: Դե գիտեք, ես ճիշտ խոսող մարդ եմ, կներեք: Հա՜, ի դեպ... Տեղյակ մարդկանցից լսել եմ, որ ձեր ինստիտուտը Սիբիրի կողմերն են տեղափոխում:

— Չի՜ կարող պատահել,— սարսափում է տանտիրուհին:— Հապա ե՞ս:

— Դե, ստիպված կլինի գնալ, ճարներդ ի՞նչ: Ոչինչ, ընտանեկան երջանկության համար նույնիսկ օգտակար է: Առանձին կապրեք:

— Սպասեցե՜ք, սպասեցե՜ք,— բացականչում է հյուրը, նայելով տանտիրոջ գլխին,— աստվա՜ծ իմ, չլինի՞ թե արդեն ճաղատանում եք: Քաչալ եք, քաչալ, փաստ է: Շնորհավորում եմ»:

Ըստ Կիկերոնի, կիրթ մարդը երբեք ցույց չպիտի տա, թե ինքը գիտի հունարեն, երբ շրջապատի մարդիկ չգիտեն այդ լեզուն: Ավելի լայն առումով խոսքը այն մասին է, որ առհասարակ կրույցի ժամանակ չպետք է ընդգծել սեփական առավելությունը:

Առանձնապես ողորմելի է երևում այն մարդը, ով ջանալով իր վարկը բարձրացնել, հասկացնում է, թե ինքը ծանոթ է այս կամ այն հայտնի կամ անվանի մարդուն: Հաճախ նման ծանոթության մասին նա դիտավորյալ խոսում է ի միջի այլոց, իբրև ինքնըստինքյան հասկանալի բանի մասին: Նկատո՞ւմ են արդյոք այդպիսիները, թե դրանով ինչպես են նվաստացնում իրենց, ինչպես են կոխում սեփական արժանապատվությունը:

Իհարկե, դժվար է մտածել ավելի աննպատակ կբաղմունք, քան «արգելված թեմաներ»-ի ցուցակ կազմելու փորձը: Ամեն մարդ պետք է տակտի կզացում ունենա, որպեսզի իրեն թույլ չտա խոսել այնպիսի բանի մասին, որը տհաճ կարող է լինել ներկա գըտնըվողներից որևէ մեկին:

Բայց խորհուրդներ տալը հեշտ է: Ավելի դժվար է ասել, թե վերջ ի վերջո ինչի՞ մասին պետք է խոսվի: Կա մարդկանց մի տեսակ, որ այդ հարցին պատասխանում է այսպես. «ոչնչի»:

Անցյալի ազնվական խավը, իրենց ծնունդի բերումով անմիտ, պարապիտային կյանքի դատապարտված մարդիկ, ժամանակի մեծ մասն անց էին կացնում միմյանց հետ շփվելով: Անելու ուրիշ բան չունեին: Նման հարկադըրյալ շփումները ծնունդ էին տալիս դատարկ կրույցներ վարելու մի ամբողջ գիտության: Զրույց՝ պարահանդեսում, սեղանի շուրջը, զբոսանքի ժամանակ, անբովանդակ բառերի շարան, կրույց եղանակի մասին:

«— Ինչ անձրևային եղանակ էր այս ամբողջ շաբաթ...

— Այո՜, եթե չեմ սխալվում, անձրև էր գալիս գրեթե ամեն օր:

— Այս առավոտ այնպիսի տեղատարափ էր, բայց հիմա կարծես պարզեց:

— Բայց ես չեմ զարմանա, եթե երեկոյան կրկին անձրև գա...»

Ավաղ, սա չարամիտ ծաղրագիր չէ, այլ մի հատված անցյալ դարի Անգլիայում հրատարակված աշխարհիկ խոսակցության դասագրքից: Անմիտ ժամանց, աննպատակ գոյություն...

«Ես մեռնում եմ ձանձրույ-

թից,— արքայական Վերսայից գրում է պալատական մի կին,— մենք խաղում ենք, հորանջում, մենք անելու ոչինչ չունենք, նախանձում ենք իրար և պատրաստ ենք մաս-մաս անել մեկս մյուսին: Մեր կրույցի թեմաները սրանք են. նկատեցի՞ք, թե ինչ հայացք գցեց թագավորը տիկին այսինչի վրա, երբ նա փսփսմամբ նստեց հերցոգուհու համար նախատեսված տեղը: Ո՞վ պետք է կբաղեցնի այսինչ հերցոգի մահից հետո թափուր մնացած տեղը: Եթե արքայադուստր Հաննովերցին պալատ հրավիրվի, ի՞նչ կհրամցնեն նրան՝ աթո՞ռ, թե՞ բազկաթոռ»:

Մի անգամ Նյու-Յորքի հեռախոսային ընկերությունը մի հետաքրքիր փորձ է արել: Դիրեկցիան վճռել է պարզել, թե մարդիկ ո՞ր բառն են ամենից հաճախ արտասանում: Այդ նպատակով լսել են 500 հեռախոսային խոսակցություն: Ո՞ր բառն էր ամենից հաճախ հնչում հեռախոսափողում: «Ես» բառը: Այդ բառն արտասանվել է 3990 անգամ:

Հենվելով այդ փորձի վրա, բուրժուական սոցիոլոգները խոսում են ամերիկյան հասարակության եսամոլության և եսապաշտության մասին: Մենք չենք վիճի այդ եզրահանգման դեմ: Համենայն դեպս այս ուսումնասիրությունը հիշեցնում է մի հեգնական ասացվածք. «Խոսեք մարդու հետ իր մասին, և նա պատրաստ է ժամերով ականջ դնել ձեզ»:

Նույն այս միտքը երկու հազար տարի առաջ մի քիչ պարադոքսալ ձևով արտահայտել է հռոմեացի բանաստեղծ Պուբլիցիոս Սիրուսը. «Մենք սկսում ենք հետաքրքրվել մարդկանցով,— ասում է նա,— երբ տեսնում ենք, որ նրանք հետաքրքրվում են մեզնով»: Իսկապես, մեզ համար հաճելի ու հետաքրքիր է այն զրուցակիցը, որ անտարբեր չէ մեր գործերի, մեր հետաքրքրությունների և մեր իսկ հանդեպ: Դրա մեջ մենք տեսնում ենք ուշադրություն և հարգանք մեր նկատմամբ:

Մի ծեր կոմունիստ, էմիգրացիայի տարիներին Լենինի հետ ունեցած առաջին հանդիպումից տարիներ անց, հիշում է. «Նստելով մեզ մոտ, նա ամենից առաջ ինձ հարցրեց անձնական գործերիս մասին, թե ինչպե՞ս եմ զգում ինձ Փարիզում և ինչպե՞ս եմ տեղավորվել: Հետո հարցրեց, թե ի՞նչ ճանապարհով, որտեղի՞ց և ինչո՞ւ եմ եկել»: Լենինը իր մասին չի խոսել: Նա մարդու հետ խոսել է հենց նրա մասին:

Գորկին իր «Գրական դիմանկարներ»-ի մեջ պատմում է, թե ինչպես մի անգամ Չեխովին այցելում են շքեղ հագնված երեք կին, որոնք ջանում են շատ «խորամիտ» զրույց սկսել:

— Անտո՛ն Պավլովիչ, ի՞նչ եք կարծում, ինչո՞վ կվերջանա պատերազմը:

Չեխովը հազաց, միտք արավ ու մեղմ պատասխանեց.

— Հավանաբար խաղաղությամբ...

— Դե, իհարկե, անպայման: Բայց ո՞վ կհաղթի: Հույնե՞րը, թե՞ թուրքերը:

— Իսկ դուք ո՞ւմ եք ավելի սիրում, հույներին, թե՞ թուրքերին,— հարցրեց կանանցից մեկի ուրիշը:

Անառարկա ու տանջալի այդ զրույցը մի որոշ ժամանակ էլ շարունակվում է, մինչև որ Չեխովն ինքը փոխում է խոսակցությունը զրուցակիցների համար առավել պարզ ու մոտիկ նյութի շուրջը:

— Ես մարմելադ եմ սիրում,— հանկարծ ասում է նա:— Իսկ դո՞ւք:

— Ես էլ շատ եմ սիրում,— աշխուժացած պատասխանում է կանանցից մեկը:

— Շա՛տ համեղ է,— լրջորեն հաստատում է երրորդը:

Եվ երեք կանայք թեթևացած, աշխույժ զրույց սկսեցին մարմելադի մասին, շատ գոհ այն բանից, որ կարիք չկար միտքը լարելու և միջազգային հարցերով խիստ հետաքրքրված ձևանալու, երբ մինչ այդ պահը դրա մասին չէին էլ մտածել:

— Փառավոր զրույց արինք,— Անտոն Պավլովիչին դառնալով, նկատեց Գորկին, երբ կանայք արդեն հեռացել էին:

Չեխովը ծիծաղեց.

— Հարկավոր է, որ ամեն մարդ խոսի իր լեզվով...

Մեծ մտքի ու բարի սրտի տեր շատ մարդիկ են տիրապետել այն բանալուն, որով ստիպել են ուրիշներին իրենց սիրտը բացել. «Ընկերական զրույցների ոգին էր նա,— Էնգելսի մասին հիշում է ժամանակակիցներից մեկը:— Էնգելսը վարպետորեն ստեղծում էր այնպիսի պայմաններ, որ ամեն մեկը իրեն ազատ ու լավ զգա...»:

Մի անգամ Կ. Մարքսի մոտ Իսպանիայից պատգամավոր է գալիս: Ինչի՞ մասին է խոսում Մարքսը նրա հետ, երբ ավարտվում է զրույցի պաշտոնական մասը: Իր մասի՞ն, իր գործերի ու հոգսերի՞: Ոչ: Մարքսը նրա հետ խոսում է այն մասին, ինչը գտնում էր, որ հետաքրքիր ու կարևոր կլինի զրուցակցի համար. նա խոսում է իսպանական գրականության և իսպանական թատրոնի մասին:

Զրույցը վարել այնպես, որ հետաքրքիր լինի դիմացինի համար, սա է զրույցի մեծագույն արվեստը, մարդկանց հետ շփվելու արվեստը: Ուրեմն և, եթե դուք իսկապես հարգում եք մարդուն և նախ նրա մասին եք մտածում և ոչ թե ձեր, դուք, իհարկե, պետք է աշխատեք զրուցել նրա համար կարևոր և նրա սրտին մոտ նյութի շուրջը:

Սխալ կլինի, սակայն, այստեղ վերջակետ դնել: Չկա մի մարդ, որ բոլորովին անհետաքրքիր լինի: Յուրաքանչյուր մարդ, որ պատահում է մեզ՝ չբացված գիրք է: Պետք է կարողանալ բացել այդ գիրքը:

**Այս հետաքրքիր նյութերի հեղինակները ծնվել, ապրել ու աշխատել են Չուկոտկայում: Նրանք պատմում են իրենց պարմանալի երկրի յուրօրինակ բնության, իրենց ժողովրդի ծանր ճակատագրի և այն վերափոխումների մասին, որ կատարվել են սովետական իշխանության օրոք: Դու կիմանաս նաև, թե ինչ կյանքով է ապրում այսօր Չուկոտկայի քո հասակակիցը, թե ինչպես է նա սիրում սառնամանիքների ու սառույցների իր հայրենիքը: Այս նյութերը քեզ կպատմեն նաև, թե ինչպես ծնվեց Մոսկվայի պիոներների հիանալի նախաձեռնությունը, որին մասնակից ես դարձել նաև դու:**



# ՀԱՐԱԶԱՏ ՉՈՒԿՈՏԿԱ

Կարելի՞ է արդյոք աշխարհագրական հայտնագործություններ անել այն վայրում, որտեղ ապրում ես տասնյակ տարիներ: Պարզվում է, որ կարելի է: Դպրոցական առաջին տարիները ինձ համար աշխարհագրական շատ կարևոր հայտնությունների մի ամբողջ շարան էին: Ամենից առաջ ես իմացա, որ ապրում եմ Ասիայի հյուսիս-արևելքում, և որ այն հրվանդանը, որտեղ մենք վազվզում ու թռչունների ձվեր ենք հավաքում, կոչվում է Դեժնևի հրվանդան, որը մեր երկրի ասիական աշխարհամասի հեռավոր հյուսիս-արևելքի ծայրամասն է: Հետո պարզվեց, որ Ալյասկայում կամ Բերինգյան նեղուցի կղզիներում ապրող մեր տոհմակից ամերիկյան էսկիմոսները, երբ մեզ հյուր էին գալիս, բառի ամենախսկական իմաստով ընկնում էին վաղվա օրը... Ժամանակի տարբերության միջազգային գիծը անցնում է Բերինգյան նեղուցով: Օրինակ, եթե ամերիկյան ափին կիրակի է, ուրեմն՝ մեզ մոտ երկուշաբթի է:

Հետո ես իմացա, որ մեր գյուղից ոչ հեռու անցնում է Բևեռային շրջանը: Ես գնացել եմ այնտեղ Ուելենի բևեռային կայանի մի գիտնականի հետ: Սարքավորումների օգնությամբ նա ճշգրիտ կերպով որոշեց, թե այդ տեղանքի որ մասով է անցնում բևեռային շրջանը, և ինձ ուղիղ այնտեղ տարավ:

Ավելի ուշ ինձ պատմեցին, որ լավ եղանակներին Դեժնևի հրվանդանի բարձունքում կապույտին տվող լեռները կոչվում են Ուելսի Արքայազնի հրվանդան և այնտեղից էլ սկսվում է Ամերիկա աշխարհամասը: Երբ դեռ շատ փոքր էի, կարծում էի, թե Չուկոտկայից բացի ուրիշ երկիր չկա: Բայց օր-օրի ես ավելի շատ էի լսում ու իմանում այլ երկրների մասին, մինչև անգամ այնպիսի երկրների, որտեղ մարդիկ երբեք ձյուն չեն տեսել: Եվ, այնուամենայնիվ, ես կարծում էի և այժմ էլ կարծում եմ, որ Չուկոտկայից լավ տեղ չկա:

Դա շատ բնական է ու հասկանալի: Սիրել այն վայրը, ուր ծնվել և ապրում ես, նույնքան օրինաչափ է, որքան մորը սիրելը:

Ես ծնվել եմ նոր, Սովետական Չուկոտկայում:

Լավ հիշում եմ, թե ինչպես էին մեր Ուելենում էլեկտրականություն անցկացնում: Գյուղի ծայրում մի հողմաշարժիչ դրեցին, որից միացված հաստ կաբելը հողի մեջ մտցրեցին: Մոնտյորը էլեկտրական լամպեր էր ամրացնում լարերի ծայրերին: Մեր ծնողները դժգոհ էին և կասկածում էին, «թե քամին կկարողանա կրակ վառել»: Բայց նշված ժամին շողշողաց էլեկտրական լույսը: Դա ապշեցուցիչ էր և անսպասելի:

Թերևս, այն լամպերը, որոնք առաջին անգամ վառվեցին իմ հարազատ Ուելենում, Չուկոտկայի նոր լույսի առաջին ավետողներն էին:

Վերջերս, Չուկոտկայի ափերով ճանապարհորդելիս, ես եղա էսկիմոսների Նոր-Չապլինո կոչվող գյուղում: Այնտեղ մի մեծ գիշերօթիկ դպրոց կա, որտեղ ապրում և սովորում են Պրովիդենսի շրջանի երեխաները: Շրջում էի ընդարձակ դասասենյակներում, մաքուր և գեղեցիկ կահավորված սենյակներում ու հիշում իմ վերջին ուղևորությունը Կանադա: Այնտեղ էլ էսկիմոսներ են ապրում: Ես տեսա, թե ինչպես փոքր երեխաները քարշ էին գալիս աղբակույտերի մեջ, տեսա ոսկու հանքերից դուրս եկող նիհար, հյուծված մարդկանց՝ բևեռային Կանադայի երբեմնի հպարտ ու աննկուն տերերին:

Մեր Նոր-Չապլինո գյուղում ես հանդիպեցի բարձրագույն կրթությամբ ուսուցիչ էսկիմոսների, որոնց հետ հիշում էինք մեր ընկերներին ու մանկավարժներին:

Այժմ բոլորովին զարմանալի չէ, երբ հասարակ եղ-

ջերապսիի որդին գիտական աստիճան է ստանում և կամ հեռավոր Ռիրկայպիայի բնակիչը գիտական ուսումնասիրություններ է կատարում՝ ատոմային էներգիան լեռնային շրջանների արդյունաբերության մեջ կիրառելու համար:

Դաժան է Չուկոտկայի բնությունը, չնայած դրան տարեց-տարի ավելանում է նրա բնակչության թիվը: Այստեղ ապրում են վրացիներ, հայեր, ղազախներ, ուկրաինացիներ, յակուտներ, բելոռուսներ...

Երբ ամենագնացով վերադառնում էի Նոր-Չապլինոյից Պրովիդենցիայի ծովախորշը, փոթորիկ էր: Մեքենավարը շարունակ կանգնեցնում էր ամենագնացը և դուրս գալիս, որպեսզի ճանապարհը ստուգի:

Հանկարծ, մի ակնթարթ ամպերի ծվենների արանքից երևաց արևը: Քամին դադարեց: Հեռվում, Պրովիդենցիա խորշի մյուս ափին, հայտնվեցին էլեկտրակայանի բարձր խողովակներ, շինարարական ամբարձիչ կռունկներ, բարձրահարկ շենքեր: Իսկ մեր ամենագնացից քիչ հեռու կանգնած էր մի սպիտակ եղջերու, որը կլոր ու անթարթ աչքերով նայում էր ամենագնացին:

Մեքենայի շարժիչը աղմկեց, եղջերուն անշտապ ցատկոտեց դեպի իր հոտը: Երբ ես վերհիշում եմ վերջին ուղևորությունս իմ ծննդավայրը, աչքերիս առջև պատկերվում է այդ տեսարանը:

Սպիտակ եղջերուն ժամանակակից քաղաքի, էլեկտրակայանների խողովակների և շինարարական կռունկների ֆոնի վրա՝ այսպիսին է այսօրվա Չուկոտկայի իսկական պատկերը:

## ՏԱՍՆԱՄՅԱԿՆԵՐ ԱՌԱՋ

**1928 թվականին Չուկոտկայի դպրոցականները դեռևս պատկերացում չունեին պիոներական կազմակերպության մասին, նույնիսկ չէին լսել «պիոներ» բառը:**

**Ապրիլի 22-ին, Վ. Ի. Լենինի հիշատակին նվիրված հանդիպման ժամանակ, ամենահամարձակ ու ակտիվ երեխաներին կարմիր վզկապներ հանձնվեցին: Պետք էր տեսնել այդ երեխաների հրճվանքը:**

**Տարօրինակ, բայց և հետաքրքիր տեսարանի ականատես կլինեք նա, ով պատահաբար ներկա գտնվեր ջոկատային առաջին հավաքույթներից մեկին: Ջոկատավարը, ձեռքերի շարժումների, դիմախաղերի միջոցով ամեն կերպ աշխատում էր իր միտքը հասկացնել պիոներներին:**

**Հավաքույթները հետաքրքիր էին անցնում, սակայն ոչ բոլոր պիոներներն էին մասնակցում. ծնողները թույլ չէին տալիս: Նրանցից շատերը գտնվում էին շամանների՝ հոգևորականների ազդեցության տակ: Վերջիններս ահաբեկում էին ծնողներին, ասելով, որ նրանց երեխաներին դժբախտություն է սպասում:**





**Այնուամենայնիվ մի քանի ամիս անց պիոներական ջոկատը արժանացավ բնակիչների համակրանքին ոչ միայն Ուելենում, այլև շրջակա գյուղերում, բոլոր այն տեղերում, ուր պիոներները հանդես էին գալիս իրենց համերգներով: Ծրագրում հիմնականում տեղ էին գտնում ազգային երգերն ու պարերը, որսորդների կյանքից հետաքրքիր դրվագներ:**

**Այն ժամանակ Չուկոտկայի երեխաների համար լվացվելը շատ տարօրինակ և անսովոր բան էր: Նրանց հայրերը, պապերն ու նախապապերը ապրել ու մեռել էին չիմանալով, թե ինչ է օճառը: Հյուսիսի դաժան պայմաններում այդ սովորությունը փոխել այնքան էլ հեշտ չէր: Ուելենում այդ արեցին պիոներները: Նրանք բոլորն էլ համարձակվեցին այդ «հերոսական» քայլը կատարել: Համախմբված կերպով հավաքում էին ձյունը, հալում և լվացվում: Այդ հիշարժան երևույթը կատարվեց դպրոցում՝ 1929 թվականի փետրվարի սկզբներին:**

**Մեծ համբավ ուներ պիոներական ոսկրափորագրության խմբակը: Չուկչիները դեռ վաղ հասակից սովորում են ոսկրի վրա փորագրել: Նրանք ինքնամոռաց կերպով տարվում են այդ աշխատանքով:**

**Ո՞վ մտքով կանցներ, որ այդ խմբակի անդամներից հետագայում պիտի մեծ նկարիչներ դուրս գան: Ոսկրափորագրիչ փոքրիկ Վուկվոլի աշխատանքը 1937 թվականին ցուցադրվել է Փարիզի միջազգային ցուցահանդեսում:**

**Մեծ ուրախություն էին պատճառում երեխաներին որսորդական և ֆիզկուլտուրայի խմբակները: Ֆիզկուլտուրայի խմբակի անդամները դահուկներով զբոսանքներ էին կազմակերպում: Շատ հետաքրքիր էին անցնում դահուկային արշավները, որոնց մասնակցում էին գրեթե բոլոր տղաները: Դահուկները պատրաստում էին սեփական ձեռքերով:**

**1929 թվականի աշնանն էր: Ուելենում առաջին անգամ անց էր կացվում պետական փոխառության բաժանորդագրություն:**

**Կարմիր անկյունում առավոտից ժողով էր սկըսվել: Նստարանները մի կողմ թողած, չուկչիները նստոտել էին հատակին ու ծխում էին իրենց սիրած**

ծիամորճը: Բոլորը կասկածանքով էին նայում զեկուցողին, որը ջանք չխնայելով բացատրում էր փոխառության նպատակի և նշանակության մասին: Զեկուցողի ելույթից հետո ըարձյալ ոչ ոք չէր համարձակվում բաժանորդագրվել: Անհրաժեշտ էր համոզել չուկչիներին: Բայց ինչպե՞ս: Առայժմ ոչ ոք դա չգիտեր: Եվ հանկարծ ներս մտան երեք պիոներ: Երեխաները գիտեին փոխառության մասին և որոշել էին օրինակ ծառայել: Պիոներական ձկնորսության խմբակը բազմիցս դուրս էր եկել ձկնորսության և վերադարձել հարուստ ավարով: Ստացված եկամուտը երեխաները որոշեցին փոխառությամբ հանձնել պետությանը: Ցուցակի «Ուելենի պիոներական ջոկատ» անվան դիմաց գրվեց 25 թվանշանը: Եվ լիազորված պիոներներից մեկը հպարտության զգացումով ստորագրեց այդ թվանշանի դիմաց: Լռության և անհամարձակության սառույցը փշրված էր: Չուկչիները սկսեցին հերթով մոտենալ սեղանին: Փոխառության բաժանորդագրությունը հաջողությամբ ընթացավ մինչև երեկո:

Այդպես էր ապրում և աշխատում Ուելեն գյուղի առաջին պիոներական ջոկատը:

ԱԼ. ՅՈՒ. ՍԿՈՐԻԿ

*Չուկոտկայի առաջին ջոկատավար, բանասիրական գիտությունների դոկտոր*

# ՄՈՍԿՎԱՑԻՆԵՐԸ ՀՈՒՇԵՑԻՆ ԵԼՔԸ

Երբ Մոսկվայի կամ Կիևի երեխաները պատրաստվում են քնելու, Չուկոտկայի աշակերտները դպրոց են գնում: Այստեղ արդեն նոր օր է սկսվում: Բայց ամենաարտասովորը այստեղ եղանակն է: Օրինակ, Բերինգի շրջանում տարվա 365 օրից 280-ը այնպիսի ձնաբուք է լինում, որ քիթդ չես կարող դուրս հանել:

Այնուամենայնիվ, այնտեղ էլ երեխաներն ապրում են պիոներական նույն օրենքներով, ինչ մեր երկրի մյուս բոլոր վայրերում: Դպրոց են հաճախում, պատրաստում են դասերը, փոխադրվում են դասարանից-դասարան: Բոլոր դպրոցներում ստեղծված են սահմանապահների և Սովետական բանակի պատանի բարեկամների ջոկատներ: Բոլոր դպրոցները մասնակցում են համամիութենական ռազմա-հայրենասիրական «Փայլակ» երթուղուն: Չուկոտկայի ազգային դպրոցներում անց են կացվում ազգային սպորտաձևերի մրցումներ. ըմբշամարտ ձյան վրա, վազք փայտով, օղապարանի նետում, շան և եղջերվի լծասահնակների մրցավազք: Ազգային անսամբլները սովորում են ազգային պարեր, որոնք ցուցադրում են եղջերապահների, որսորդների, երկրաբանների, օդաչուների, ոսկի որոնողների աշխատանքը: Պատանի տեխնիկները պատրաստում են ավիամոդելներ, ռադիոընդունիչներ, ուսումնասիրում են կինոյի գործը, նկարիչները նկարում են, փորագրիչները փորագրություններ են անում ոսկրի վրա: Չուկոտկայում տաղանդավոր երեխաներ շատ կան:

Բայց ասենք թե, նրանք ցանկանում են մասնակցել պատանի տեխնիկների համամիութենական մրցույթին: Տեղ չլինելու պատճառով հնարավոր չի լինում բոլոր պատանի տեխնիկներին ի մի հավաքել, դիտել նրանց աշխատանքներն ու համեմատել: Տեղ չկա, որտեղ կարելի լինի ցուցադրել նկարիչների և ոսկրի վրա փորագրողների աշխատանքները: Չուկչիներից և ոչ մեկը լողալ չգիտի, և չի կարող մասնակցել լողի մրցումներին:

Մոսկվայի պիոներները հուշեցին ելքը՝ Անադիրում պիոներների պալատ կառուցել: Պիոներների պալատը Չուկոտկայի երեխաների համար ոչ միայն թանկարժեք նվեր կլինի, այլև զգալիորեն կփոխի պիոներական կազմակերպության կյանքը: Այստեղ երեխաները հավաքվելու և կատարած աշխատանքները քննարկելու հնարավորություն կունենան: Չուկոտկայի պիոներներն այլևս ոչնչով ետ չեն մնա «մայր ցամաքի» երեխաներից:



# ՊԱԼԱՏԻ ՆԱԽԱԳԻԾԸ

Արծաթափայլ ԻԼ—18-ը սլանում է արևին ընդառաջ: Առջևում Չուկոտկան է, Անադիր քաղաքը, որտեղ պիտի կառուցվի Չուկոտկայի երեխաների պիոներ պալատը: Օդանավում ճարտարապետներ են, նրանց թվում՝ Միքե Անտոնիոն, որն Իսպանիայից Սովետական Միություն է եկել 1939 թվականին: Մեր երկիրը դարձավ նրա երկրորդ հայրենիքը: Այստեղ նա ավարտեց ճարտարապետական ինս-

տիտուտը: Եվ հենց նրան էլ վիճակվեց իր ընկերներ Էդուարդ Պուտինցևի, Վալենտին Ռոդիոնովի հետ նախագծել պիոներ պալատը: Հունվարյան մի օր ծովածոցի եզրի բարձրադիր մասում կարելի էր տեսնել մարդկանց, որոնք ուշադիր զննում էին ապագա շինարարական հրապարակը: Նրանք վիճում էին միմյանց հետ, ինչ-որ բան պնդում և ապացուցում: Իսկ հետո՝ առաջին ուրվագծերը, գծագրերը, էսքիզները:

Ապագա պիոներ պալատի նախագիծը երկար և լրջորեն քննարկվում էր: Իրենց առաջարկություններն էին մտցնում կուսակցության, կոմերիտմիության աշխատողները, Անադիր քաղաքի մանկավարժները, ճարտարապետները և հենց իրենք՝ երեխաները: Չէ՞ որ այդ պալատը նրանց համար էր՝ Չուկոտկայի պատանի բնակիչների:

Չուկոտկայի պիոներների պալատի շենքը չորս հարկանի է լինելու:

Նոր պիոներ պալատում կբացվի լենինյան սենյակ, ինչպես նաև ինտերնացիոնալ բարեկամության սենյակ: Այդտեղ կցուցադրվեն այն բոլոր նվերները, որոնք Չուկոտկայի երեխաները ստացել են այս տարիների ընթացքում:

Ի՞նչ պիոներ պալատ, որ չունենա կինոհամերգասրահ: Նախատեսված է նաև այդ:

200 պիոներ միանգամից կարող են կինո կամ համերգ դիտել: Պատանի մարմնամարզիկների համար նախատեսված է մարմնամարզության սրահ: Առաջին հարկում կտեղավորվի ձմեռային սրահը, որտեղ կանցկացվեն սպորտային խաղեր, կկազմակերպվի տունդրայի բնությանը նվիրված անկյուն: Իսկ չորրորդ հարկում կլինի ձմեռային այգին, որտեղ կզբաղվեն պատանի բնասերները: Ճարտարապետները մտածել են նաև այն երեխաների մասին, որոնք հրապուրվում են գիտությամբ, տեխնիկայով, արվեստով: ԵՒը սենյակ հատկացված են թատերական, տիկնիկային, կինո և ռադիոտեխնիկայի խմբակներին: Լայնորեն կբացվեն գրադարանի դռները, իսկ պատանի շախմատիստների համար՝ շախմատի ակումբը:

Պալատը այնպես է կառուցված, որ բոլոր հարկերը միմյանց հետ կապված են լինելու հատուկ ատրիճաններով: Դուք կարող եք լինել երկրորդ հարկում, բայց տեսնել այն ամենը, ինչ կատարվում է առաջին և երրորդ հարկերում:

Ո՛չ ցուրտը, ո՛չ բուքը չեն ազդի նոր պիոներ պալատի վրա. այն կառուցվելու է բետոնից և ապակուց:

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՀՈՒՄՈՐ

Մայթեզրին նստել էր յոթնամյա մի տղա և լաց էր լինում: Մի անցորդ կանգ առավ և կարեկցանքով հարցրեց.

— Ի՞նչ է պատահել, փոքրի՛կ: Ինչո՞ւ ես լալիս:

— Ինձ մի ֆրանկ է պետք, որպեսզի տեսնեմ ծնողներիս:

— Մի՛ լա: Ահա, վերցրո՛ւ: Մի՞թե հերիք է:

— Օ՜, իհարկե: Չէ՞ որ ծնողներս կինո են գնացել:



Ծնողների հետ հյուր գնացած փոքրիկ տղան կերավ իր բաժին տորթը և էլի խնդրեց.

— Մի՞թե քեզ չեմ ասել, որ չի կարելի երկրորդ բաժինը խնդրել,— հանդիմանեց մայրը:

— Ասել ես: Բայց դու հո չգիտեի՞ր, որ տորթի բաժինները այսքան փոքր կլինեն:



Անհաջողակ որսորդի ութամյա աղջիկը ասում է ընկերուհուն.

— Եթե ուսուցչուհին նորից պատմի նախնադարյան մարդկանց մասին, թե, իբր նրանք միայն որսով էին ապրում, ես կասեմ, որ դա սուտ է:



Երկու ընկեր վիճում են.

— Իմ շունը այնքան խելացի է, որ զբոսանքից տուն վերադառնալիս՝ միշտ սեղմում է զանգի կոճակը:

— Իմ շունը դրա կարիքը չունի, նա սեփական բանալին ունի:



— Ժյո՛ւլ, ինչո՞ւ կապի մասին քո շարադրությունը յոթ տողից է բաղկացած: Օրինակ վերցնեիր Ժանից, նա գրել է երեքուկես էջ:

— Ես գրել եմ խտացրած կապի մասին, պարո՛ն ուսուցիչ:



— Ինչո՞ւ եք ձեր որդուն երաժշտական դպրոց ուղարկում: Չէ՞ որ նա լսողություն չունի:

— Իսկ նրա ինչի՞ն է պետք լսողությունը: Նա պետք է նվագի:

# ԵՐԿՏԱՐԵՑԻ՛Ն

ՆԵԿՏԱՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Մոտենում էր ուսումնական տարին: Վայգենի երկու քույրերը՝ Վարսիկն ու Անահիտը, նոր դասագրքեր ու տետրեր էին գնել, հայրիկից նվեր էին ստացել մի-մի գեղեցիկ պայուսակ և հիմա ամբողջ օրը, ուրախ-ուրախ թերթում էին իրենց դասագրքերն ու անհամբեր սպասում դպրոց գնալուն:

Իսկ Վայգենը տխուր էր ու մտազբաղ: Նա ո՛չ նոր պայուսակ ուներ, ո՛չ նոր դասագրքեր:

— Նոր դասագրքերն ինչի՞դ են հարկավոր,— ասաց մայրիկը:

Որոշված էր՝ Վայգենը դպրոց էր տանելու հին պայուսակն ու հին դասագրքերը: Բայց սարսափելին այդ չէր:

— Տեսնես ինչպե՛ս է իրենից փոքրերի հետ ընկերություն անելու,— եղբորը խղճալով ասում էր Վարսիկը:

— Թող լավ սովորեր,— պատասխանում էր Անահիտը:

Ամբողջ բակում ուրիշ ոչ մի երկտարեցի չկար Վայգենից բացի: Երբ նա երկու վերաքննություններից էլ «երկու» ստացավ, այլևս չէր իջնում բակում խաղալու: Գագիկն ու Աշոտը առաջ նրա մտերիմ ընկերներն էին, իսկ հիմա հեռու էին թվում:

Վայգենը շատ էր փոխվել: Այլևս կռիվներ չէր սարքում քույրերի հետ, անկարգություն չէր անում, և տանն էլ աշխատում էին չնեղացնել նրան:

— Մեղք է,— միմյանց ասում էին Վարսիկն ու Անահիտը:

Իսկ Վայգենը խռում էր, վիրավորվում ու լռում:

Եկավ սեպտեմբերի մեկը: Վաղ առավոտից բակում աշխուժություն էր տիրում: Հետո կամաց-կամաց ծիծաղն ու աղմուկը պակասեց, խումբ-խումբ բոլոր երեխաները դպրոց գնացին: Ամենավերջում տնից դուրս եկավ Վայգենը, հին պայուսակը ձեռքին: Նրա ետևից մայրը կամացուկ բակ դուրս եկավ և, թևերը կրծքին ծալած, երկար նայեց հեռացող տղային:

Վայգենը երբ դպրոց հասավ, բոլորը խումբ-խումբ դպրոցի բակում հավաքված զրուցում էին:

— Վայգե՛ն,—կանչեց Գագիկը,— արի այստե՛ղ:

Վայգենը մոտեցավ նախկին ընկերներին: Նրանց հետ լավ էր: Առանց միմյանց հերթ տալու պատմում էին, թե ուր են գնացել ամռանը, ինչ են արել...

Սուրիկը փչեց, որ գյուղում օձ է սպանել, բոլորը հավատացին: Ուրիշ անգամ չէին հավատա, որովհետև Սուրիկը միշտ էլ փչում էր: Բայց այսօր սեպտեմբերի մեկն էր, երեք ամիս միմյանց չէին տեսել և բոլորը հյուշտ էին ու սիրալիր: Մի պահ Վայգենը մոռացավ նույնիսկ, որ ինքը մնացել է նույն դասարանում: Հետո կանգը հնչեց: Բոլորը դասարան մտան, և Վայգենը մենակ մնալով՝ քայլեց դեպի միջանցքի ծայրը, որտեղ 7-րդ բ-ն էր:

Նա անհամարձակ կանգնեց դռների միջև ու վռնեց ներսում եղածներին: Դե իհարկե, ինքը ամենաբարձրահասակն էր: Իրենց



# ԻՄ ԾՆՆԴԱՎԱՅՐԸ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Չորս կողմ՝ լեռներ, վերև՝ Շուշին,
Ասես թիկնած ծով մշուշին,
Նավի նման լողում, լողում,
Բայց մնում է միշտ իր տեղում:
Կանգնած բա՛րձր, բա՛րձր սարին,
Նայում է նա ողջ աշխարհին,
Ինքը՝ հագած քարե շորեր,
Շուրջը՝ կանաչ սար ու ձորեր...
Օդը՝ ծաղիկ, ջուրը՝ պաղիկ,
Շուշվա հովիկն՝ անուշ տաղիկ,
Երբ կանչում եմ, մի պահ կանգնում,
Մորս ձայնն է արձագանքում...

դասարանում էլ էր ամենաբարձրահասակը, բայց այն ժամանակ նա պարծենում էր դրանով, իսկ հիմա, երբ նստեց մեջտեղի շարքի վերջին նստարանին, կուչ եկավ, աշխատեց փոքրանալ:

— Վա՜յ,— ասաց մի տղա,— քեռի, դու այստեղ ի՞նչ ես անում:

— Երևի նոր ուսուցիչ է,— սրամտեց շիկահեր մի աղջիկ:

«Ափսո՜ս, որ աղջիկ է,— մտածեց Վազգենը,— թե չէ ես նրա հետ ուրիշ ձևով կխոսեի:

— Վե՛րջ տուր,— շիկահերին ասաց երկար հյուսքերով մի աղջիկ,— մեղք է:

Երկար հյուսքերով աղջկանից Վազգենը ավելի վիրավորվեց, քան շիկահերից:

«Մեղք է»,— կրկնեց նա մըտքում:

Հետո այնպես ստացվեց, որ հենց այդ նույն աղջկան առաջին իսկ դասին ուսուցիչը նստեցրեց նրա կողքին: Դասարանում այդ միակ ազատ տեղն էր: Աղջիկը առաջին դասին նստեց լուռ, խռովածի նման, հետո կամաց-կամաց ուղղվեց տեղում ու ժպտաց տղային:

— Դու մի՛ տխրիր, իմ եղբայրն էլ երկու ամիս դպրոց չգնաց ու մնաց նույն դասարանում: Երևի դու էլ ես հիվանդացել, հա՞...

— Վերջի՛ն նստարան, լռությո՛ւն,— սաստեց ուսուցիչը:

Վազգենը այլևս ոչինչ չասաց: Աղջիկը հնարեց, որ նա իսկապես հիվանդացել է ու դասամիջոցին, երբ Վազգենը գնացել էր իր նախկին դասընկերների մոտ, պատմեց բոլորին:

Հայոց լեզվի ժամին ուսուցչուհին Վազգենին գրատախտակի մոտ կանչեց: Երբ տղան պատասխանում էր, աղջիկը հավատաց իր հնարածին: Թրթռացող սրտով Վազգենը նստեց: Ռուսաց լեզուն հեշտ էր, պատմության դասերը հիշում էր: Ամենադժվարը հանրահաշիվն ու աշխարհագրությունն էին: Տանը բոլորը կարմացել էին: Վազգենը միայն դասերը սովորելուց հետո էր բակ իջնում:

Դասարանը իր մեջ առավ տղային, նրա ներկայությանը սովորեցին, և տղան էլ նրանց սովորեց:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



## ԳԱՌՆԱՐԱԾԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Ծաղիկների ծովն է ծփում,
Սարին իջնում մշուշը շեկ,
Մի խենթ ջրվեժ քարին խփում
Ու ձորի մեջ դառնում է երգ:

Մասրենու մոտ բուրումնավետ
Գառնարածն է նստել ժայռին,
Թե անձրև գա, գառների հետ
Հյուր կգնա մութ քարայրին:

Լանջին բուրող ու ցողաթաց,
Արածում են գառներն ուրախ,
Շոգ կեսօրին հեռվից նրանց
Ձայն է տալիս գետակը պաղ:

Գիրք է կարդում փոքրիկ տղան,
Բողարի հետ կատակ անում.
Դե ինձ ասեք՝ նրա նման
Ո՞վ է հիմա հանգստանում:






## ԽՈՍՈՂ ԳԻՐՔԸ

Հիշո՞ւմ եք, Անդերսենը մի հեքիաթ ունի գրքի մասին, որի էջերում մարդիկ և գազանները կենդանանում են: Մի ամերիկյան ֆիրմա վերջերս գազանների նկարներով գիրք է հրատարակել: Երբ թերթում եք այդ գիրքը և հասնում, օրինակ, առյուծի նկարին, լսվում է մռնչոց: Գրքի էջերից լսվում են նաև շան հաչոց և վագրի ոռնոց: Ինչպե՞ս է դա կատարվում՝ ընթերցողը չի կարող իմանալ, որովհետև ֆիրման խիստ գաղտնի է պահում այդ հայտնագործությունը:

## ՍՏՈՐՋՐՅԱ ԶԲՈՍԱՅԳԻ

Ճապոնիայում, ծովափնյա Տուսասիմիդաու քաղաքի մոտ, 20 մետր խորության վրա կառուցվում է աշխարհում առաջին ստորջրյա զբոսայգին: Այցելուները կզբոսնեն ապակեպատ ծառուղիներով, կհիանան ծովի կենդանական ու բուսական աշխարհի գեղեցկությամբ: Զբոսայգու տարածությունը 30 հեկտար է:



## ԾԼՈՒՄ ԵՆ ՀԱԶԱՐ ՏԱՐԻ ԱՆՑ

*Անցյալ տարի Լեհաստանում կազմակերպված հնագիտական հայտնագործությունների ցուցահանդեսում ներկայացված էր մի բույս, որը ծլել էր մոտ հազարամյա տարիք ունեցող սերմերից:*

*Լավ պահպանված վիճակում սերմերը գտնվել են հնագետների կողմից վերջերս հայտնաբերված Մասլովիցե գյուղի մոտ եղած վաղ միջնադարյան դամբարանից: Նրանք մի քիչ նման են մանանեխի սերմերին, բայց ավելի կարծր են. նույնիսկ ածելիով դժվար են կտրվում:*

*Հողամաններում ցանելուց հետո՝ սերմերը մի շաբաթ անց ծլեցին: Ծիլը բարձրացավ 12 սանտիմետր և պայտաձև վառ կանաչ տերևներ արձակեց: Դատելով բազմաթիվ տերևներից, նա պետք է շարունակի աճել: Բայց թե դա ինչ բույս է, առայժմ չի պարզված: Համենայն դեպս, նա նման չէ այժմ գոյություն ունեցող ոչ մի բույսի:*

## ԻՆՉՊԻՍԻ՞Ն Է ՓԻՂԸ

Ջունգլիում փիղը որպես աշխատուժ բարձր է գնահատվում ոչ միայն իր հսկայական ուժի, այլև իր արտակարգ հնազանդության շնորհիվ: Փղերը հոժարակամ կատարում են հանձնարարությունները, այն էլ՝ բոլորովին ազատ պայմաններում: Հաճախ նրանց բաց են թողնում «զբոսնելու» ջունգլիում: Միակ նախազգուշական միջոցը վզից կախված զանգն է, բայց ընդհանրապես կարիք էլ չի լինում հետո նրանց փնտրելու. նրանք ճշտապահորեն վերադառնում են սովորական ժամին՝ իրենց նախընտրած աղի ճաշը ուտելու:

Հետաքրքիր է, որ մարդու և փղի զարգացման ժամանակաշրջանները համընկնում են: Այսպես. փիղը կարող է համեմատաբար թեթև աշխատանքներ կատարել 16 տարեկան հասակում: Նրա չափահասությունը սկսում է 25 տարեկանից և 30 տարի շարունակ նա իր ուժերի լիարժեքության ժամանակաշրջանն է ապրում. 60 տարեկանից արդեն դժվարանում է աշխատել, իսկ 70 տարեկան հասակում լիակատար ծերուկ է: Փիղը հազվադեպ է 75 տարեկանից անցնում:

Փղերի վարժեցումը սկսում են լավ ճաշով ու գվարճություններով, այնուհետև, բամբուկե ամուր վանդակներում նրանց ընտելացնում են հրահանգների և աշխատանքի: Այս գործում հիանալի արդյունավետ միջոց է «վարժեցնող» փղերի օգտագործումը, որոնք առհասարակ ավելի խիստ են իրենց ցեղակիցների հետ, քան մարդիկ, որովհետև գիտեն՝ հաջողության դեպքում իրենց համար առանձնաշնորհություններ են նախատեսված: Արտակարգ ընդունակ «աշակերտներին» մեծ շուքով ման են ածում մյուս փղերի առջևից, իսկ «ուսուցիչը» հպարտ-հպարտ դիտելով այս տեսարանը, կարծես ուզում է ասել. «Տեսեք, թե ի՜նչ եմ դարձրել այս վայրենուն»...

Անտառում փղերի աշխատանքը գերաններ տեղափոխելն է: Ճանապարհի զառիվայր լինելու դեպքում հատուկ ուղիներ են բացում, որոնց վրայով փղերը գլորում են գերանները: Անչափ հետաքրքրական է տեսնել, թե ինչ ջանասիրությամբ են կատարում նրանք այս աշխատանքը, հաճույքով հետևում են, թե ինչպես են սահում գերանները, իսկ եթե մեկնումեկը սխալ ուղղություն է վերցնում, փիղը անմիջապես վազելով մոտենում և ճիշտ ընթացք է տալիս նրան: Միայն երբ համոզվում է արդեն, որ ամեն ինչ կարգին է, վերադառնում է հաջորդ գերանին: Փղերը ընդունակ են ամբողջ օրը գործով ընկնել, մոռանալ նույնիսկ ճաշելը: Քիչ չեն այն դեպքերը, երբ վտանգելով սեփական կյանքը՝ նրանք փորձանքից փրկել են իրենց խնամողներին:

Մի զարմանալի հատկություն ևս, որ ունեն փղերը, այդ նրանց անհավատալի արագաշարժությունն



## ԿԱՊԻԿՆԵՐԸ ԵՐԳՈՒՄ ԵՆ

**Կապիկները սիրում են երգել: Վերջերս հայտնի դարձավ, որ օրանգուտանգները ինչ-որ բան են մռռում քթի տակ: Իսկ այժմ պարզվել է, որ գիբբոնը նույնպես երգում է: Եվ այն էլ ինչպե՜ս: Ֆրանսիացի գիտնականները մագնիտաֆոնի վրա ձայնագրել են տարիքոտ և անչափահաս գիբբոնների 90 երգ:**



## ՋՐԱՍՈՒԶԱԿ ԿԱՏՈՒՆԵՐ ԵՎ ՇԻՆԱՐԱՐ ԱՂԱՎՆԻՆԵՐ

*Հարյուր տարի առաջ անհայտ ծովագնացները Հնդկական օվկիանոսում գտնվող Միլադում-մադուլու կղզին բերեցին մի քանի կատու: Կղզին անմարդաբնակ էր, բայց շատ թռչուններ ու մանր կենդանիներ կային: Կատուները վայրենացան և, հավանաբար նպաստավոր պայմաններից, այնքան բազմացան, որ ոչնչացրին կղզու մնացած բնակիչներին: Սովորական տնային կատուն այս պայմաններում չէր դիմանա, բայց ինքնուրույն կյանքի երկար տարիները կղզիաբնակ կատվին այլ ոգով էին դաստիարակել. հաղթահարելով բնածին վախը ջրի նկատմամբ, Միլադում-մադուլուի կատուները գրոհեցին ծովը, սովորեցին հիանալի լողալ, սուզվել և ձուկ բռնել:*

*Բայց միայն անմարդաբնակ կղզում ապրելու համար չէ, որ պետք է հնարամիտ լինել: Գինձայում, Տոկիոյի ամենամարդաշատ թաղամասում, երկու աղավնի որոշեցին բույն հյուսել: Սակայն մի քանի կիլոմետր տարածության վրա ո՛չ խոտ կար, ո՛չ ծղոտ: Փորձառու քաղաքաբնակ աղավնիները գտան ելք. Նրանք բույնը կառուցեցին շինարարական նյութերի մնացորդներից՝ մետաղալարի կտորներից և բետոնից:*



*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

**է, եթե հաշվի առնենք այդ թանձրամորթների ծանրությունը: Փիղը կարող է ջունգլիի մյուս բնակիչների հավասար արագությամբ պանալ, բայց հազվադեպ են այն առիթները, երբ նա պարտավորված է լինում շտապել, որովհետև չկա այնպիսի մի ուժ, որը նրան ստիպի այդ անել:**

**Փղերի մոտ խիստ զարգացած է փոխադարձ օգնության զգացումը: Մի անգամ մի փղի ձագ են գնում, որին առավոտյան գնացքով տանելու էին դեպի Եվրոպա: Գիշերվա կեսին, իր վագոնային կալանքից անհանգստացած, փիղը սկսում է բարձրաձայն բողոքել: Շրջապատի իր ցեղակիցները լսելով այդ ձայնը, այնքան են հուզվում, որ կատաղած նամփա են ընկնում ձայնի ուղղությամբ՝ դեպի կայարան: Մոտ հարյուր փիղ, իրենց ճանապարհին ամեն ինչ ավերելով ու փշրելով, հավաքվում են այստեղ, տակնուվրա անում կայարանը և ազատում ձագին ու իրենց հետ տանում ջունգլի:**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕԳՏԱԿԱՐ ԾԱՌԱՏԵՍԱԿՆԵՐԸ



**ՃԱԳՈՄ (ՕՄԵԼԻԱ)**

Ճագոմը կիսապարազիտ, մշտադալար բույս է: Ապրում է խոշոր ծառերի վրա, իր արմատներով ամրանալով ծառի հաստ ճյուղերին: Կիսապարազիտ է համարվում, որովհետև ծառից ջուր է վերցնում և իր կաշենման, հաստ տերևներով ֆոտոսինթեզ կատարելով, ածխաջրեր է կուտակում:

Խիստ թունավոր բույս է ճագոմը: Վտանգավոր է հատկապես երեխաների համար, որոնք կարող են հրապուրվել և համտես անել նրա կլոր, սպիտակ հատապտուղները, իսկ երբեմն՝ տերևները:

Ճագոմի բուժիչ հատկությունները վաղուց են հայտնի: Նա պարունակում է նյութեր, որոնք արգելակում են սկլերոզը և իջեցնում արյան ճնշումը:

Հանդիպում է միայն Հայաստանի անտառային շրջաններում:

## ՍԵՎ ՀԱՂԱՐՋԵՆԻ

Մեկից-երկու մետր բարձրությամբ թուփ է՝ թաթաձև, երեքից հինգ բլթականի տերևներով: Ծաղիկները բաց դեղնականաչավուն են:

Տերևները և չհասունացած պտուղները թարմ վիճակում փայտոջիլի անդուր հոտ ունեն: Հասունացած պտուղները կորցնում են այդ հոտը:

Հաղարջենու բոլոր տեսակների մեջ սև հաղարջենին ամենաարժեքավորն է: Պտուղները պարունակում են շաքար, թթուներ (հատկապես խնձորաթթու) պեկտինային նյութեր, էմուլսին և մեծ քանակությամբ վիտամին: Տերևները ունեն միզաբեր և քրտնաբեր հատկություն, որը խիստ օգտակար է երիկամային հիվանդություններով տառապողների համար: Սև հաղարջենու տերևներից պատրաստված թեյը բուժիչ միջոց է կապույտ հազի և սպազմատիկ հազի դեմ:

Հասունացած պտուղները ուտվում են: Դրանցից մուրաբաներ, անուշահյութեր են պատրաստում, օգտագործում են հրուշակեղենի արտադրության մեջ:



Հայաստանում հանդիպում է անտառային շրջաններում: Մեծ քանակությամբ մշակվում է դեկորատիվ տնկարկներում, Հայաստանի համարյա բոլոր խոշոր բնակավայրերում:

## ՄՈՇԵՆԻ



Սողացող կամ կիսասողացող փշապատ թուփ է: Կիսամշտադալար է: Արագորեն բազմանում է արմատային մացառներով:

Մեծ քանակությամբ հանդիպում է անտառային շրջաններում, թփուտներում, անտառի եզրին, քարքարոտ զառիթափներում, ճանապարհների եզրերին: Ամենուրեք օգտագործվում է որպես կենդանի ցանկապատ: Ծաղկում է հիմնականում հունիս-հուլիս ամիսներին, սպիտակ, հնգաթերթ ծաղիկներով:

Մոշենու տերևները մեծ քանակությամբ դաբաղանյութեր, թթուներ (խնձորաթթու, թրթնջկաթթու) են պարունակում: Դրանք չափազանց արժեքավոր են օրգանիզմի համար, մեծ չափով օժանդակում են սըննդանյութերի տարրալուծմանը: Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ Եվրոպայում մեծ քանակությամբ մոշենու տերևներ էին մթերում: Դըրանից հատուկ թեյ էին պատրաստում, որը բանակում օգտագործում էին դիզենտերիան և փորլուծությունը բուժելու համար: Նույնպիսի նպատակով կարելի է օգտագործել նաև մոշենու սնդարար և համեղ պըտուղները:

## ԿԵՉԻ ԵԼՈՒՆԴԱՎՈՐ

Խոշոր ծառ է: Հայաստանում հանդիպում է բոլոր անտառային շրջաններում: Մշակության մեջ ամենուրեք օգտագործվում է զբոսայգիներում, պուրակներում, անտառաշերտերում և այլն: Խոնավասեր է և առատ ոռոգում է պահանջում:

Տերևները եռանկյուն են, կախված են երկար կոթուններից, եզրերը ատամնավոր են: Կեչու վրա երկու տեսակի ծաղիկներ կարելի է տարբերել. արական ծաղիկները կազմավորվում են աշնանից, գլանաձև են և գարնանը առատ ծաղկափոշի են արձակում: Իգական ծաղիկները հայտնվում են գարնանը և աստիճանաբար մեծանալով «կատվիկներ» են դառնում:

Կեչու երիտասարդ տերևները օգտագործվում են բժշկության մեջ, քանի որ մեծ քանակությամբ դաբաղային նյութեր, սապոնիններ, գլյուկոզիդներ, բետուլոզիդներ են պարունակում: Դրանք հատկապես

օգտակար են երիկամների հիվանդություններով տառապող հիվանդների համար, օժանդակում են մեզի և քրտինքի արագ անջատվելուն մարմնից հեռանալուն: Տերևներից ստանում են հատուկ թեյ, որը նույնպես օգտագործում են այդ նպատակի համար:

Կարելի է օգտագործել նաև կեչու հյութը, որը նույնպես բուժիչ նշանակություն ունի, և բացի այդ, ամրացնում ու բարելավում է մազերը:

## ՄՈՐԵ՛ՆԻ



Տարածված է Հայաստանի անտառապատ շրջանների բարձր լեռնային մասերում: Մոշենու մոտիկ ազգակիցն է: Ծաղկում է բավականին երկար. մա-



յիսից մինչև օգոստոս: Մեծ քանակությամբ աճում է հարթավայրերում, բացատներում, քարքարոտ լանջերում, նոսր անտառներում: Մշակվում է այգիներում, նախապարտեզներում, պուրակներում, զբոսայգիներում:

Բժշկության մեջ օգտագործում են երիտասարդ տերևները, որոնք մեծ քանակությամբ դաբաղային նյութեր են պարունակում և հրաշալի միջոց են լուծի ու դիզենտերիայի դեմ: Մոռենու և մոշենու տերևների խառնուրդից բուժիչ թեյ են պատրաստում:

Մոռենու պտուղները չափազանց սննդարար են: Դրանք օգտագործվում են հյութեր, մուրաբաներ, պովիդլո պատրաստելու համար, ինչպես նաև հրուշակեղենի արտադրության մեջ: Մոռենու հյութը դեղագործության մեջ օգտագործում են այլ դեղամիջոցների համը բարելավելու համար:

Մոռենու թարմ պտուղները ունեն նաև բուժիչ նշանակություն: Դրանք մեզ մոտ վաղուց ի վեր օգտագործվում են զանազան հիվանդություններ բուժելու, և հատկապես մրսածության դեմ:

## ՏԽԼԵ՛ՆԻ

Հայաստանում մի ժամանակ շատ է տարածված եղել, սակայն այժմ աստիճանաբար անհետանում է: Հանդիպում է միայն Հայաստանի անտառային շրջաններում, հատկապես նոր անտառներում, անտառային բացատներում, անտառի եզրերին, հարթավայրերում և այլն: Կեչու նման սա էլ ունի արական և իգական ծաղիկներ: Արական ծաղիկները երկար, դեղին «կատվիկներ» են, որոնք բացվում են վաղ գարնանը, հսկայական քանակությամբ ծաղկեփոշի արտադրելով: Իգական ծաղիկները մանր են, կանաչ, կարմիր սպիով: Պտուղը տխիլն է, որը թփի վրա փաթաթված է լինում հատուկ պտղապատով:

Պտուղները համեղ և սննդարար են: Դրանք պարունակում են 60 % յուղեր, շաքար, դառը նյութեր և այլն: Շատ հին ժամանակներից ի վեր հայտնի է տխլենու բուժիչ նշանակությունը: Տերևները պարունակում են մեծ քանակությամբ եթերային յուղեր, միրիցիդրին, գլյուկոզիդ և այլ նյութեր:

Տխլենու տերևները նույնպես բժշկության մեջ օգտագործում են հատուկ թեյ պատրաստելու համար, որը օժանդակում է օրգանիզմից քրտինքի և միզանյութերի հեռանալուն:

Տխլենին նաև դեկորատիվ բույս է: Լավ խնամքի և մշակության դեպքում այն կարող է զարդարել մեր պուրակներն ու զբոսայգիները: Հատկապես գեղեցիկ է տխլենու կարմրատերև այլատեսակը, որը սակայն շատ սակավ է հանդիպում:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԻՇԽԱՆ ՆԱԶԱՐՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15. почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05292: Պատվեր 450: Տպաքանակ՝ 68800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/VIII 1971 թ.:
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:



# ԿԱՐԼ ԼԻԲԿՆԵԽՏ

Փոքրիկ Կարլը երեք տարեկան էր, երբ նրանց մոտ հյուր եկավ Կարլ Մարքսը իր կրտսեր աղջկա՝ Էլեոնորայի հետ: Կարլի հայրը՝ Վիլհելմ Լիբկնեխտը, իր ժամանակի առաջադեմ ու խիզախ մարդկանցից մեկն էր, Մարքսի հավատարիմ ընկերը, և մեծ օգնություն էր ցույց տալիս նրան հեղափոխական աշխատանքներում:

Նրանք երեք օր անցկացրին Լիբկնեխտների տանը, և այդ օրերից անմոռանալի հուշեր մնացին փոքրիկ Կարլի հոգում:

Անցան տարիներ, և փոքրիկ Կարլը դարձավ մեծ Կարլի հետևորդը: Պատանի հասակից նա պինվորագրվեց բանվոր դասակարգի ազատագրության համար մղվող պայքարին և մինչև իր կյանքի վերջը վենքը վայր չդրեց:

Կարլ Լիբկնեխտը և Ռոզա Լյուքսեմբուրգը գլխավորում էին հեղափոխական շարժումը Գերմանիայում, նրանց ջանքերով ստեղծվեց Գերմանիայի կոմունիստական կուսակցությունը: Գերմանական բուրժուազիան չէր կարող անտարբեր նայել նրանց գործունեությանը և նշանակեց 100.000 մարկ պարգև, ով կսպաներ այդ անվեհեր հեղափոխականներին: Գտնըվեցին ստահակներ՝ հանձինս մի խումբ բանդիտ սպաների, որոնք ձերբակալեցին Կարլ Լիբկնեխտին ու Ռոզա Լյուքսեմբուրգին և գազանաբար սպանեցին: Սակայն դրանով չկասեցվեց հեղափոխության բարձրացող ալիքը:

Աշխարհի առաջավոր մարդկությունը այսօր խորին սիրով և երախտագիտությամբ նշում է գերմանական ժողովրդի քաջարի կավակ, աննկուն հեղափոխական Կարլ Լիբկնեխտի ծննդյան 100-ամյակը:

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

# ՆՐԱ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է...

*(Ծննդյան 200-ամյակի առթիվ)*



Պատանեկության տարիներին հայրենի Շոտլանդիայի նկատմամբ տածած հիացմունքն ու երկյուղածությունը Վալտեր Սկոտին ուղեկցեցին ողջ կյանքում, ներշնչեցին նրան՝ աշխարհին ներկայացնելու իր փոքրիկ լեռնոտ հայրենիքը, ծանոթացնելու իր քաջ ու ազատասեր հայրենակիցների հետ: Սկոտը դարձավ աշխարհահռչակ գրող, նախ և առաջ լինելով ջերմ հայրենասեր, «իսկական շոտլանդացին, բոլոր շոտլանդացիներից»:

Վալտեր Սկոտը առավելապես հայտնի է որպես վիպասան: Սակայն նաև բանաստեղծ է և իր կենդանության օրոք այնպիսի փառքի էր արժանացել, որ նույնիսկ բարձր էր դասվում Բայրոնից, համարվում անգլիագիր պոեզիայի առաջին դեմքը:

Սկոտի առաջին վեպը՝ «Ուեվերլին», որ նվիրված է անգլիական կավթիչների դեմ շոտլանդացիների վերջին խոշոր՝ 18-րդ դարի կեսերին ծագած ապստամբությանը, լույս տեսավ 1814 թվին և արտակարգ հաջողություն ունեցավ: Այն թարգմանվեց աշխարհի բազմաթիվ լեզուներով: Այնուհետև արագորեն իրար հաջորդեցին Սկոտի մյուս քսանութ հիանալի վեպերը: Բալզակը այդ վեպերից շատերը համաշխարհային վիպագրության գլուխգործոցներ համարեց, իսկ գովասանքների մեջ արտակարգ ժլատ Գյոթեն գրեց. «Վալտեր Սկոտը հավասարը չունեցող մեծ տաղանդ է»:

Երբ արդեն անվանի գրող էր, Վալտեր Սկոտը կառուցեց Էբոտսֆորդ ամրոցը, այն դարձնելով Շոտլանդիայի պատմությանն ու արվեստին նվիրված թանգարան: Մի յուրօրինակ հարուստ ու շքեղ թանգարան է և նրա գրական ժառանգությունը՝ աշխարհի համար միշտ բաց, և ամեն ոք, ով ծանոթանում է այդտեղ եղած բարձրարժեք ու չհնացող գործերին՝ երկյուղածությամբ ու սիրով է լցվում փոքրիկ լեռնոտ երկրի բնության ու ժողովրդի, ինչպես և նրա պանծալի զավակի՝ Վալտեր Սկոտի նկատմամբ:

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈ՛ՒՆ, ՀՐԱՎԻՐՈՒՄ ԵՆՔ ՄՐՑՈՒՅԹԻ

Լրանում է Հայաստանի կոմերիտմիության 50-ամյակը: Այդ առթիվ ՀԼԿԵՄ Կենտկոմը և «Պիոներ»-ի խմբագրությունը հայտարարում են լավագույն պատմվածքների և բանաստեղծությունների մրցույթ՝ «Քո ավագ եղբայրը» թեմայով, որը հիմնականում պետք է արտացոլի կոմերիտականների կյանքն ու առօրյան:

Լավագույն ստեղծագործությունները կարժանանան մրցանակների:

**Պատմվածքի գծով.**

- Առաջին մրցանակ՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգիր:
- Երկրորդ մրցանակ—«Արտեկ» համամիութենական պիոներական ճամբարի ուղեգիր:
- Երրորդ մրցանակ՝ հուշանվեր:

**Բանաստեղծության գծով.**

- Առաջին մրցանակ՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգիր:
- Երկրորդ մրցանակ՝ «Արտեկ» համամիութենական պիոներական ճամբարի ուղեգիր:
- Երրորդ մրցանակ՝ հուշանվեր:

Աշխատանքները ներկայացնելու վերջին ժամկետը հոկտեմբերի 10-ն է:

Նյութերն ուղարկել «Պիոների» խմբագրություն:

ԳԻՆԸ՝ 10 կ ԻՆԴԵՔՍ՝ 77806



## ՄԵՐ ՇՆԻԿԸ

Փոքրիկ է դեռ
Շնիկը մեր,
Լեզուն նրա
Լավ չի բացվել:
Երբ ասում եմ՝
— Ասա՛, «հա՛վ»,
Կրկնում է՝
— Հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ...





## ՊԱՀՄՏՈՑԻ

Արևն իջավ վենիթից,
Բլուրներում պահ մտավ,
Բացեց լուսինն աչքն արծաթ
Ու արևին ման եկավ:

Երբ քրքրեց ամպ ու թուփ
Եվ արևին չգտավ,
Հույսը կտրած լուսինը
Իր թաքստոցը մտավ:

Իսկ արեգակը հաղթած՝
Արևելքից դուրս եկավ
Ու ժպտալով սիգաճեմ,
Նորից վենիթ բարձրացավ...

*ԷԴԻԿ ՋՈՒԲԱՆՅԱՆ*

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

